Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1952

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

---

# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐ-ԼՈՒՍԱՎՈՐԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

*Ռեսպուբլիկայում սկսվել է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը՝ գյուղատնտեսական տարվա ամենալարված և ամենապատասխանատու շրջանը։*

*Բերքահավաքը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարի վճռական էտապն է։ Բերքահավաքի օրինակելի անցկացումը կլինի մի նոր ավանդ մեր երկրի հզորության է՛լ ավելի ամրապնդման, ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության գործում։*

*Բերքահավաքը գործունեության նոր, լայն ասպարեզ է բաց անում գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկների համար։ Այս օրերին շրջանային կուլտուրայի տներում, գյուղական ակումբներում, գրադարաններում կատարվող ամենօրյա աշխատանքը պետք է լայնորեն նպաստի այն համաժողովրդական պայքարին, որ մղվում է բարձր բերքի, հարազատ պետությանն ավելի շատ հացահատիկ տալու համար։ Ան-*

հրաժեշտ է ամենօրյա զրույցների, զեկուցումների, դասախոսությունների և բարձրաձայն ընթերցանությունների միջոցով կոլտնտեսային գյուղի հայրենասերներին պարզաբանել բերքահավաքի ընթացքում իրենց առաջ դրված խնդիրները, յուրաքանչյուր կոլտնտեսականի և կոլտնտեսուհու օգնել՝ ավելի խորը գիտակցելու իր անձնական աշխատանքի կապը տվյալ կոլտնտեսության, շրջանի, օկրուգի, ռեսպուբլիկայի առաջ դրված խնդիրների հետ։

Այս օրերին ակումբ և գրադարան մտնողը պետք է զգա այն աշխատանքային եռուզեռը, որ կա տվյալ կոլտնտեսությունում։ Լոզունգները, պլակատները, ցուցահանդեսները կոլտնտեսականներին պետք է կոչ անեն՝ արագ և սեղմ ժամկետում ավարտել բերքահավաքը, պատվով կատարել հացամթերումները։ Շատ գյուղական ակումբներում բերքահավաքի առաջին իսկ օրից երևացին լոզունգներ և պլակատներ ընկեր Ստալինի հայտնի խոսքերով. «Բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում: Բերքը ժամանակին հավաքեցիր՝ կշահես, ուշացրիր բերքահավաքը՝ տանուլ կտաս»:



Հարկավոր է կոլտնտեսականներին միշտ հիշեցնել սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների մասին, մրցության միջոցով բերքահավաքը կատարել անկորուստ և սեղմ ժամկետում։ Վերջերս Բասարգեչարի Ակունք գյուղի ակումբում ագիտացիոն զրույց կազմակերպվեց՝ «Բերքահավաքը և մեր խնդիրները» թեմայով։ Զրույցից հետո ակումբում երևաց «Ինչի համար է պայքարում մեր կոլտնտեսությունը 1952 թվականին» պլակատը, որը ցույց է տալիս, որ Ակունքի կոլտնտեսությունը պայքարում է մեկ հեկտարից՝ 16 ցենտներ ցորենի, 20 ցենտներ ծխախոտի համար։

Նոր Բայազետի, Բերիայի շրջանների շատ ակումբներում պատրաստել են «Ով ինչպես է աշխատում» տախտակը, որտեղ ամեն օր առավոտյան գրանցվում են դաշտավարական բրիգադների նախորդ օրը կատարած աշխատանքի արդյունքները՝ տոկոսներով։

Եվ իրոք, գյուղական շատ ակումբներ, պարտիական կազմակերպությունների ամենօրյա ղեկավարությամբ, ագիտատորների լայն աջակցությամբ, բերքահավաքի օրերին ավելի աշխույժ և բովանդակալից աշխատանք են կատարում։

Վերջերս Բերիայի շրջանի Նորագավիթ գյուղի ակումբում առավոտյան բացվեց ցուցահանդես «Բարձր կազմակերպվածությամբ անցկացնենք 1952 թվականի բերքահավաքը» թեմայով։ Ցերեկը դաշտում ագիտատորները զրույց կազմակերպեցին Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի մասին, երեկոյան ակումբում տեղի ունեցավ հարց ու պատասխանի երեկո՝ նվիրված Կորեայի իրադարձություններին, ակումբի գրադարանում կազմակերպվեց բարձրաձայն ընթերցանություն՝ «Տիեզերքի կառուցվածքը» գիտա-պոպուլյար բրոշյուրից։ Վերջում ցուցադրվեց նոր կինոնկար։

Սակայն մեր ոչ բոլոր ակումբներն ու գրադարաններն են հաջողությամբ աշխատում բերքահավաքի օրերին։ Ավելին՝ Շամշադինի, Ղափանի շրջանների մի շարք ակումբներ և գրադարաններ բերքահավաքի այս եռուն օրերին անգործության են մատնված։

Թալինի շրջանի կուլտուրայի տունը, շրջանի շատ ակումբներ ոչ մի բանով չեն ար-



ձագանքում բերքահավաքի կամպանիային։ Սևանի շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկներում ամիսներով չեն կազմակերպվում զեկուցումներ և դասախոսություններ՝ գիտա-լուսավորական թեմաներով։ Ակումբները և ագիտատորները համատեղ աշխատանք չեն կատարում։

Յուրաքանչյուր ակումբ, յուրաքանչյուր գրադարան պետք է ունենա բերքահավաքի ընթացքում իր կատարելիք աշխատանքի պլանը, այն սերտորեն կապելով տվյալ կոլտնտեսության, սովխոզի, ՄՏ կայանի առաջ դրված կոնկրետ խնդիրների հետ։ Ճիշտ են վարվում այն կուլտ-լուս հիմնարկները, որոնք բերքահավաքի առաջին իսկ օրից աշխատանքը տեղափոխում են դաշտ, բրիգադ։

Ամենօրյա զեկուցումներ և զրույցներ կազմակերպելուց բացի, դաշտում պետք է ունենալ մրցության ցուցանիշների տախտակներ, պատվո տախտակներ, օրվա թերթերի ցուցափեղկեր, պլակատներ, լոզունգներ։ Հարկավոր է սիստեմատիկաբար լույս ընծայել ագիտ-թերթիկներ և կայծակներ։

Անհրաժեշտ է կազմակերպել դաշտում աշխատող կոլտնտեսականների կուլտուրական

սպասարկումը և հանդիսատը, ինքնագործ խմբերի ելույթներ։ Այս հարցում քաղաքը պետք է օգնի գյուղին։ Լենինականի Օկրուգային Սովետի Գործկոմի կուլտ-լուս հիմնարկների բաժինը քաղաքի ուժերով կազմակերպել է ագիտ-բրիգադ, որն արդեն եղել է Ղուկասյանի շրջանի մի շարք գյուղերում։ Ագիտ-բրիգադը կազմված է որակյալ դասախոսներից, ագիտատորներից, գրողներից։ Ամենուրեք կոլտնտեսականները մեծ բավականությամբ են ընդունում ագիտ-բրիգադի ելույթը։

Օրերս Ղափանի շրջան մեկնեց Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Կուլտուր-լուսավորական հիմնարկների Գործերի Կոմիտեի ագիտ-բրիգադը՝ 25 հոգուց բաղկացած։ Բրիգադն այնտեղ մնալու է 15—20 օր, ելույթ է ունենալու շրջանի բոլոր կոլտնտեսություններում։ Այդպիսի բրիգադներ կարելի է կազմակերպել ամեն մի շրջանում, ամեն մի օկրուգում։

Շրջանային և գյուղական գրադարանները բերքահավաքի օրերին պետք է կազմակերպեն շրջիկ գրադարաններ, գիրքը, թերթը պետք է տարվի դաշտ։ Այդ կարելի է կատարել ընթերցողների լայն ակտիվի, հատկապես



գյուղական երիտասարդության միջոցով։ Ամեն մի նոր ստացված գրքի մասին անմիջապես պետք է իմանա կոլտնտեսականը։ Ակումբում, գրադարանում, դաշտում պետք է գրույց կազմակերպել նոր գրքերի շուրջը, հատվածներ կարդալ այդ գրքերից։

Հարկավոր է ծավալել առանձնապես գյուղատնտեսական և ագրո-զոոտեխնիկական գրականության պրոպագանդան։

Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել գյուղական բնակչության կինո սպասարկմանը։ Ակումբային աշխատողները կինոյի աշխատողների հետ միասին բոլոր միջոցները պետք է ձեռք առնեն կինոն լայն մասսաներին հասցնելու, կինոնկարները հաջողությամբ ցուցադրելու համար։

Բերքահավաքի ընթացքում պետք է աշխուժացնել կուլտուր-լուսավորական հիմնարկների կողմից տարվող դասախոսական պրոպագանդան։ Պետք է ավելի շատ և բարձրորակ դասախոսություններ կարդալ կոլտնտեսականների համար։ Այդ դասախոսությունները անհրաժեշտ է շաղկապել տվյալ կոլտնտեսության, շրջանի կոնկրետ խնդիրների, նրանց անելիքների հետ։ Կուլտուր-լու-

սավորական հիմնարկների Գործերի Կոմիտեն, Հասարակական և քաղաքական գիտելիքների տարածման ընկերությունը պետք է լայն օգնություն ցույց տան գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկներին, պարբերաբար գյուղ ուղարկելով որակյալ դասախոսների։

Կուլտուր-լուսավորական հիմնարկները բերքահավաքի ընթացքում իրենց առջև դրված խնդիրները հաջողությամբ կարող են կատարել միայն այն դեպքում, եթե նրանք գործեն ագիտկոլեկտիվների հետ միասին։ Գյուղական ակումբը ագիտացիոն աշխատանքի կենտրոն է. ագիտատորները պետք է կենդանի, ակտիվ մասնակցություն հանդես բերեն ակումբի, կուլտուրայի տան, գրադարանի աշխատանքներին։ Դա նրանց հաջող գործունեության կարևոր նախապայմանն է։

Բերքահավաքը՝ ժողովրդա-տնտեսական այդ կարևոր կամպանիան, լուրջ քննություն է կուլտուր-լուսավորական հիմնարկների և նրանց աշխատողների համար։ Եվ այդ քննությունը, պարտիական կազմակերպությունների ամենօրյա ղեկավարությամբ, նրանք պետք է հաջողությամբ բռնեն։



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ ԱՆՇԵՂՈՐԵՆ ԲԱՐՁՐԱՆՈՒՄ Է ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական պետության հիմնադիրներ ու ղեկավարներ Լենինը և Ստալինը միշտ ընդգծել են աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն դերը սոցիալիստական շինարարության գործում։ Դեռևս քաղաքացիական պատերազմի տարիներին ռևոլյուցիայի հանճարեղ առաջնորդներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը մշակելով մեր երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցման պլանը, առանձնահատուկ տեղ էին հատկացնում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Վ. Ի. Լենինը 1919 թվականին «Մեծ նախաձեռնություն» նշանավոր հոդվածում գրել է.

«Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (Երկեր, հատ. 29, էջ 523)։

Կենսագործելով երկրի ինդուստրացման և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի

սոցիալիստական վերակառուցման լենինյան-ստալինյան պլանը՝ սովետական երկրի մարդիկ հասել են աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ և անշեղ բարձրացման։ Աշխատանքի արտադրողականության բուռն վերելքը դարձել է սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման անբաժան ուղեկիցը։ Մեր երկրում աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացման տեմպերը ակնառու կերպով վկայում են տնտեսության սոցիալիստական սիստեմի վիթխարի առավելությունները կապիտալիստականի համեմատությամբ։ Նախապատերազմյան 12 տարիների (1928—1940 թվականների) ընթացքում աշխատանքի արտադրողականությունը ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աճել է 350 տոկոսով։ ԱՄՆ-ում մինչև համաշխարհային տնտեսական կրիզիսը 30 տարվա ընթացքում (1899—1929 թվականներին) աշխատանքի արտադրողականությունն աճել է ընդամենը 90 տոկոսով, իսկ Անգլիայում 5 տարվա ժամանակամիջոցում (1924—1929 թվականներին)՝ միայն 11 տոկոսով։

Սոցիալիզմի երկրում աշխատանքի արտադրողականության բուռն վերելքի մասին են խոսում հետևյալ փաստերը։ Առաջին հնգամյակում աշխատանքի արտադրողակա-



նությունը արդյունաբերության մեջ աճել է 41 տոկոսով, երկրորդ հնգամյակում՝ 82 տոկոսով, երրորդ հնգամյակի երեք տարիներում՝ 32 տոկոսով։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի պլանով, աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1950 թվականին, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, պետք է աճեր 36 տոկոսով, բայց փաստորեն աճել է ավելի քան 37 տոկոսով։

Բազմաթիվ առաջավոր գործարաններ ու ֆաբրիկաներ աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել են 200—300 տոկոսով։

Հազարավոր արդյունաբերական ձեռնարկություններ իրենց թողարկած արտադրանքի քանակով և որակով զգալիորեն գերազանցում են ցանկացած կապիտալիստական երկրի նույնանման ձեռնարկություններից։ Այսպես, օրինակ, Կուզնեցկի Ստալինի անվան մետալուրգիական գործարանը հասել է մարտենյան հնոցների աշխարհում ամենաբարձր արտադրողականության և տալիս է միայն գերազանց որակի արտադրանք։

Առաջավոր կոլտնտեսությունները գիտության աշխատողների սերտ համագործակցությամբ արդեն այժմ հեկտարից ստանում

են 30—40 ցենտներ հացահատիկ, 80—100 ցենտներ բամբակ, 500 և ավելի ցենտներ շաքարի ճակնդեղ։ Իսկ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսները տալիս են աշխատանքի արտադրողականության է՛լ ավելի բարձր ցուցանիշներ։ Սիբիրյան կոլտնտեսուհի Աննա Սերգեևնան հեկտարից ստացել է 90 ցենտներ աշնանացան ցորեն։ Ուկրաինացի կոլտնտեսուհի Ա. Ա. Պարմալինան հեկտարից ստանում է 500—1000 ցենտներ շաքարի ճակնդեղ։

Թե որքան մեծ նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացման յուրաքանչյուր տոկոսը ժողովրդական տնտեսության զարգացման, մեր երկրում նյութական բարիքների է՛լ ավելի առատություն ստեղծելու գործում, պերճախոս ապացույցն են հետևյալ տվյալները։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակում ձեռք բերած աշխատանքի արտադրողականության աճի յուրաքանչյուր տոկոսը նշանակում է՝ արդյունաբերական արտադրանքի ավելացում 1 միլիարդ 385 միլիոն ռուբլով, այն ժամանակ, երբ առաջին հնգամյակում այն նշանակում էր՝ արդյունաբերական արտադրանքի ավելացում 310 միլիոն ռուբլով, երկրորդ հնգամյակում՝ 500 միլիոն ռուբլով



և երրորդ հնգամյակում՝ 1 միլիարդ ռուբլով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր երկրում տեղի է ունենում ոչ թե տարերայնորեն, ինքնահոսի կարգով, այլ գիտակցորեն, ժողովրդական տնտեսության պլանավորման, միլիոնավոր մասսաների ստեղծագործական ակտիվության, կոմունիստական պարտիայի կազմակերպող և ուղղություն տվող դերի միջոցով։ Սոցիալիստական հասարակարգում աշխատանքի արտադրողականության բարձրացման աղբյուրները արմատապես տարբերվում են աշխատանքի արտադրողականության բարձրացման կապիտալիստական աղբյուրներից։

Կապիտալիստական երկրներում, որտեղ տիրում է արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, մոնոպոլիստները աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում են աշխատավորների անլուր շահագործման, նրանց աշխատանքի հրեշավոր ինտենսիվացման միջոցով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը կապիտալիզմի ժամանակ տանում է դեպի գործազրկության աճում, բանվորների ռեալ աշխատավարձի իջեցում, հետևապես և դեպի բանվոր դասակարգի

աղքատացման ուժեղացում՝ մի կողմում, և կապիտալիստների շահույթների ավելացում՝ մյուս կողմում։ Սովետական Միությունում, որտեղ արտադրության միջոցները հանրային սեփականություն են և որտեղ մարդիկ աշխատում են իրենց համար, անսահման հնարավորություններ կան աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Սովետական ժողովուրդը շահագրգռված է աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի մեջ, որովհետև այդ նշանակում է ՍՍՌ Միության տնտեսական հզորության հետագա ուժեղացում, սովետական մարդկանց բարեկեցության է՛լ ավելի բարելավում, կոմունիզմի կառուցման տեմպերի արագացում։

Որո՞նք են մեր երկրում աշխատանքի արտադրողականության բարձրացման գործոնները։ Դրանք են՝ ամենաառաջավոր տեխնիկայի արմատավորումը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, աշխատանքի մեքենայացումը, արտադրության ավտոմատիզացիան, աշխատանքի կուլտուրայի բարձրացումը, աշխատավոր մասսաների կուլտուրական-տեխնիկական մակարդակի աճը, սոցիալիստական մրցության ծավալումը։



Աշխատանքի արտադրողականությունը մեզ մոտ աճում է ամենից առաջ նոր, առաջնակարգ տեխնիկայի հիման վրա, որը հնարավորություն է տալիս կոմպլեքսային մեքենայացման ենթարկել հիմնական աշխատանքային պրոցեսները։ Թե ինչպիսի լուրջ հաջողությունների է հասել սովետական երկիրը այս ուղղությամբ, այդ ցույց են տալիս հետևյալ փաստերը։ 1950 թվականին ՍՍՌՄ մեքենաշինության արտադրանքը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 2,3 անգամ։

Միայն 1949 և 1950 թվականներին ստեղծվել և թողարկվել են ավելի քան 700 ամենակատարելագործված նոր տեսակի ու մարկայի մեքենաներ և մեխանիզմներ, որոնք ունեն բարձր արտադրողականություն։

ՍՍՌՄ արդյունաբերության կարևորագույն ճյուղերում 80—90 տոկոսով մեքենայացված են հիմնական և բարդ աշխատանքային պրոցեսները։ Ածխահորերում գործարկված ածխային կոմբայնի և այլ նորագույն տեխնիկայի շնորհիվ ավարտվում է բոլոր աշխատատար պրոցեսների մեքենայացումը ածխային արդյունաբերության մեջ։ Գրեթե ամբողջովին մեքենայացված են հողային և բետոնային աշխատանքները կոմու-

նիզմի ստալինյան կառուցումներում։ Կոմպլեքսային մեքենայացման են ենթարկվում կարևոր արտադրական պրոցեսները կոլտնտեսություններում և սովխոզներում։ Գյուղատնտեսության մեջ աշխատանքի մեքենայացման բարձր աստիճանի մասին է վկայում այն փաստը, որ գյուղատնտեսության մոտ 900 հիմնական արտադրական պրոցեսներից արդեն մեքենայացված են 700-ը։

Աշխատանքի արտադրողականության աճը սերտորեն կապված է աշխատավորների կուլտուրական-տեխնիկական մակարդակի վերելքի հետ, առանց որի հնարավոր չէ հաջողությամբ օգտագործել նոր տեխնիկան, մեքենայացնել աշխատանքը, ավտոմատիզացիայի ենթարկել արտադրությունը, հետևապես բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Հանդես գալով ստախանովականների Համամիութենական առաջին խորհրդակցությունում, ընկեր Ստալինը ասել է, որ միայն բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակը «...կարող է ապահովել աշխատանքի այն բարձր արտադրողականությունը և սպառման առարկաների այն առատությունը, որոնք անհրաժեշտ են նրա համար, որպեսզի սկսենք անցումը սո-



ցիալիզմից կոմունիզմին» («Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 605)։

Բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության անդուլ հոգատարության շնորհիվ աննախընթաց կերպով աճել է սովետական մարդկանց կուլտուրական-տեխնիկական մակարդակը։

Եթե 1926—1939 թվականներին ՍՍՌՄ բնակչությունը ամբողջությամբ վերցրած աճել է մոտավորապես 16 տոկոսով, ապա որակյալ բանվորների և ինտելիգենցիայի քանակը ավելացել է անհամեմատ ավելի շատ։ Նույն ժամանակամիջոցում փականագործների թիվը ավելացել է 9,7 անգամ, խառատներինը՝ 6,8, դազգահագործներինը՝ 14, հորատող վարպետներինը՝ 5,7, բանվոր-մեխանիկներինը՝ 9,5, տրակտորիստներինը՝ 215 անգամ։

Հետպատերազմյան հնգամյակում 31 միլիոն բանվորներ բարձրացրել են իրենց որակավորումը առանց արտադրությունից կտրվելու։ Այժմ մետալուրգիական արդյունաբերության մեջ յուրաքանչյուր երկրորդ բանվորը սովորում է, իսկ ավտոմոբիլային արդյունաբերության մեջ յուրաքանչյուր երրորդ բանվորը գյուտարար կամ ռացիոնա-

 լիզատոր է, որը վկայում է բանվորական մասսայի բուռն կերպով աճող կուլտուրական-տեխնիկական մակարդակի մասին։

Արդեն իսկ այժմ, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ներկա էտապում, հազարավոր և տասնյակ հազարավոր ստախանովականներ, առաջավոր բանվորներ և կոլտնտեսականներ հմտորեն զուգակցում են մտավոր և ֆիզիկական աշխատանքը, հանդիսանում են արտադրության նորարարներ, ռացիոնալիզատորներ, գյուտարարներ, գերազանց տիրապետում են ժամանակակից բարդ տեխնիկային, գիտության հիմունքներին։

Ստալինյան մրցանակի արժանացած բազմավաստակ ակադեմիկոսի կողքին մենք տեսնում ենք շարքային բանվորին և կոլտնտեսականին, որոնք իրենց առաջարկություններով արմատապես բարելավում են արտադրության մեթոդները, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, հարստացնում գիտությունը։

Անձնվիրաբար պայքարելով կոմունիզմի կառուցման համար՝ սովետական մարդիկ առաջ են քաշում սոցիալիստական մրցության նորանոր բարձր ձևեր, մրցություն են



ծավալում աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքի բարձր կուլտուրայի, տեխնիկայի լավագույն օգտագործման համար և այլն։ Արդյունաբերության մի շարք ճյուղերում աշխատող բանվորների կեսը ստախանովականներ են։ Մեր խնդիրն է, որ մեր երկրի աշխատավոր ամբողջ մասսան տա աշխատանքի այնպիսի արտադրողականություն, որպիսին այսօր տալիս են արդյունաբերության և գյուղատնտեսության նշանավոր ստախանովականները՝ աշխատանքի կոմունիստական արտադրողականության այդ պիոներները։ Միայն այդ ժամանակ մենք կհասնենք նյութական բարիքների այնպիսի առատության, որն անհրաժեշտ է «Յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա պահանջմունքների» կոմունիստական սկզբունքի իրականացման համար։ Ահա թե ինչու պայքարը աշխատանքի արտադրողականության բարձրացման համար՝ պայքար է կոմունիստական հասարակարգի կառուցման համար։

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ

# ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԵՐԵՎԱՆԻ ԷԼԵԿՏՐԱՏԵԽՆԻԿԱ-ԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի ագիտկոլեկտիվն իր ամենօրյա աշխատանքում մեծ տեղ է տալիս ցուցադրական ագիտացիային, օգտագործելով նրա բազմազան ձևերը՝ պատի թերթը, իլյիշովկան, «Կայծակ» թերթիկները, պատվո տախտակը, դիագրամները, քարտեզը, լոզունգը, պլակատը և այլն։

Ցուցադրական ագիտացիայի այս ձևերի հմուտ օգտագործումը մեր գործարանում մեծ չափով բարձրացնում է աշխատավորների արտադրական խանդավառությունը, նպաստում է արտադրական պլանների կատարմանը, որակական ՝ ցուցանիշների բարելավմանը և ձեռնարկության առջև դրված բոլոր խնդիրների կատարմանը։

Գործարանի բանվորների մեջ աշխատանքային չտեսնված բարձր խանդավառություն են առաջացնում կոմունիզմի մեծ կառույցներից ստացվող ամենօրյա տեղեկու-



թյունները։ Հաշվի առնելով աշխատավորների հետաքրքրությունը, գործարանի ակումբում, ցեխերում, հերթափոխություններում և բրիգադներում քարտեզների, պլակատների ու լուսանկարների միջոցով ցույց են տրվում կոմունիզմի հոյակապ կառուցումները, սովետական նորագույն հզոր տեխնիկայի մեծ դերը, կատարվող աշխատանքների լայն ծավալը։ Առանձին թերթիկների վրա գրված ու պատերին փակցված են թվեր, որոնք ցույց են տալիս, թե մեր երկրին ինչ կտան կոմունիզմի մեծ կառուցումները։

Գործարանի բանվորների շրջանում ցուցադրական ագիտացիայի միջոցով լայնորեն մասսայականացվում են պատմական այն բոլոր հաղթանակները, որ սովետական ժողովուրդը ձեռք է բերել բոլշևիկների պարտիայի և մեր սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ։

Ցուցադրական ագիտացիայի միջոցով մենք միաժամանակ վեր ենք հանում մեր գործարանի կոլեկտիվի հաջողությունները, ցույց ենք տալիս թերությունները, բանվորներին մոբիլիզացնում այդ թերությունները վերացնելու և պլանների կատարումն ու գերակատարումը ապահովելու համար։

1952 թվականի առաջին եռամսյակի ար-

դյունքներն ամփոփելիս պարզվեց, որ գեներատորների ցեխը որոշ նյութերի գերածախս է տալիս։ Թղթակիցները մանրամասն ուսումնասիրեցին գերածախսի պատճառները և քննադատորեն լուսաբանեցին ցեխային իլյիչովկայում ու գործարանային պատի թերթում։ Այդ քննադատությունից անհրաժեշտ եզրակացություն անելով, ցեխի կոլեկտիվն ուժեղացրեց պայքարը նյութերի տնտեսման ռեժիմը խստորեն կենսագործելու ուղղությամբ և շուտով ոչ միայն վերացրեց նյութերի գերածախսը, այլև տնտեսում արվեց։ Այս գործում մեծ դեր խաղաց նաև Ստալինյան մրցանակի լաուրեատ, անվանի փաթաթող վարպետ Մարգար Գալֆայանի հարուստ փորձի մասսայականացումը։

Դարբնոցի ցեխի նորարար բանվոր ընկ. Մ. Ջանդոյանը կատարելագործելով իր աշխատանքի մեթոդը՝ հասել է աշխատանքի բարձր արտադրողականության։ Անհրաժեշտ էր նրա աշխատանքի մեթոդը դարձնել բոլոր բանվորների սեփականությունը։ Դրա համար լույս ընծայվեց իլյիչովկայի հատուկ համար, որտեղ նկարագրվեց նրա աշխատանքի առաջավոր մեթոդը։ Բանվորները լայնորեն ծանոթացան ընկ. Մ. Ջանդոյանի մեթոդին և



մասսայաբար սկսեցին աշխատել նրա օրինակով։

Ցուցադրական ագիտացիայի մյուս կարևոր ձևը, որ գործադրվեց և դրական արդյունքներ տվեց, «Կայծակ» թերթիկների հրատարակումն էր։ «Կայծակ» թերթիկի միջոցով արագորեն, հենց նույն օրը տարածվում, մասսայականացվում են առաջավոր բանվորների, նորարարների ձեռք բերած հաջողությունները, հաղորդումներ են արվում, թե ո՛ր ցեխը, բրիգադը, տեղամասը ինչպես կատարեց տվյալ օրվա արտադրանքի գրաֆիկը, տեխնիկական ինչ նոր պրոգրես տեղի ունեցավ գործարանում և այլն։ Այդ թերթիկների միջոցով միաժամանակ բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ուշադրությունը բևեռվում է այն հիմնական թերությունների վրա, որոնք խանգարում են պլանի կատարմանը։

«Կայծակ» թերթիկները մեծ դեր են կատարում նաև գործարանում աշխատանքային կարգապահությունն ուժեղացնելու գործում։ Այսպես, գործարանի մի շարք աշխատողներ սովորություն էին դարձրել աշխատանքից 15—20 րոպե ուշանալ, որը բացասաբար էր անդրադառնում օրվա առաջադրանքի կատարման վրա։ «Կայծակ» թերթիկները ա-

հաղանդեցին այդ մասին և ցույց տվին, որ եթե յուրաքանչյուր օր 10—15 հոգի աշխատանքից 15—20 րոպե ուշանա, ապա տարեկան այն կկազմի մոտ 800 աշխատանքային ժամ։ Մինչդեռ 800 ժամվա ընթացքում գործարանը կտա տասնյակ հազար ռուբլու արտադրանք։

Վերջերս գործարանում ցուցադրական ագիտացիան հարստացվեց մի նոր ձևով ևս. բացի գործարանային ընդհանուր պատվո տախտակից, ռացիոնալիզատորական-գյուտարարական բյուրոն պատրաստեց առանձին պատվո տախտակ՝ ռացիոնալիզատորների համար։ 15 լավագույն ռացիոնալիզատորներ արդեն արժանացել են այդ պատվո տախտակին։ Բացի այդ, հուլիս ամսում լույս տեսավ ռացիոնալիզատորական-գյուտարարական բյուրոյի օրգան «Ռացիոնալիզատոր» պատի թերթը, որը լուսաբանում է ռացիոնալիզատորական աշխատանքը։

Գործարանի ակումբում կա հատուկ անկյուն, որտեղ ցուցադրվում են ռացիոնալիզատորների կողմից վերափոխված, կատարելագործված այս կամ այն դետալի մակետը, գծագրերը և ապա պատրաստի տիտուլը, որոնց գործադրումով աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է։



Արտադրության առաջավորներին ու նորարարներին խրախուսելու համար նրանցից լավագույնների պորտրեները փակցված են ակումբի պատին։ Պորտրեների տակ գրված են նրանց անուն-ազգանունը և աշխատանքի ցուցանիշները։ Այսպես. անվանի նորարար Ս. Ջոբանյանի պորտրեի տակ գրված է. «Ես առաջադրանքս կատարում եմ 300 տոկոսով, իսկ դո՞ւ»։

Դրա հետ միասին գործարանի ցեխերում փակցված են արտադրական ցուցանիշների տախտակներ, որտեղ յուրաքանչյուր բանվոր օրվա վերջում կարդում է իր և իր ընկերների պլանի կատարման ու որակի բարձրացման ցուցանիշները։

Ագիտացիայի այս ձևերը դեպի աշխատանքային սխրագործություն են մղում բոլոր բանվորներին։

Ագիտացիոն մասսայական աշխատանքի ուժեղացման միջոցով գործարանի պարտիական կազմակերպությունն առաջ է բերում աշխատանքային խանդավառություն և այն ուղղում արտադրական պլանների կատարմանն ու որակական ցուցանիշների բարելավմանը։ Գործարանի կոլեկտիվն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, 1951 թ. համապատասխան ժամանակաշրջանի համեմա-

տուփյամբ, 70,4 տոկոսով ավելացրել է արտադրանքի թողարկումը, 25—30 տոկոսով իջեցրել է գեներատորների ինքնարժեքը, յուրացրել է ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող երկու նոր տեսակների՝ էլեկտրաշարժիչների ու էլեկտրազոդիչ ապարատների արտադրության թողարկումը։

Ցուցադրական ագիտացիայի միջոցով գործարանում արագորեն պրոպագանդվում է միության առաջավոր արտադրական ձեռնարկություններում ծնունդ առած յուրաքանչյուր նոր հայրենասիրական նախաձեռնություն։ Երբ հայտնի դարձավ Լյուբլինոյի Կալինինի անվան ձուլման-մեխանիկական գործարանի նորարարներ Ժանդարովայի և Ագաֆոնովայի նախաձեռնությունը՝ յուրաքանչյուր օպերացիա արագ ու գերազանց կատարելու մասին, արտադրական ցեխերում փակցվեցին լոզունգներ՝ «Բոլորս աշխատենք լյուբլինցիների օրինակով», «Յուրաքանչյուր օպերացիա կատարենք արագ և գերազանց»։ Դրանից բացի աչքի ընկնող տեղերում փակցվեցին «Պրավդա»-ում տպագրված Ժանդարովայի ու Ագաֆոնովայի հոդվածները և նրանց պորտրետները։ Ագիտատորներն սկսեցին բանվորներին պատմել լյուբլինցիների նախա-



ձեռնության էության, ցույց տալ, թե այդ փորձի արմատավորումով գործարանը որքան մեծ օգուտ կտա երկրին։ Ծավալված ագիտացիայի արդյունքը եղավ այն, որ կարճ ժամանակում տասնյակ բանվորներ սկսեցին աշխատել Ժանդարովայի և Ագաֆոնովայի մեթոդով։

Բացի այդ բոլորից, փակցված են նաև կոլեկտիվի սոցիալիստական մրցության պայմանագրի առանձին կետերի վերաբերյալ լոզունգներ. այսպես՝ «Հիշի՛ր, մենք պարտավորվել ենք տարեկան պլանը կատարել ժամկետից մեկ ամիս շուտ»։ Փակցված են նաև ահազանգող լոզունգներ՝ «Ինչպե՞ս ես կատարում մրցությամբ ստանձնած քո պարտավորությունները», «Վարպե՛տ, աշխատանքի տեղի հաջող նախապատրաստումը պլանի կատարման գրավականն է», «Խոտանն ուտում է ազնիվ աշխատանքի տընտեսածը» և նման մի շարք լոզունգներ, որոնք բանվորներին մոբիլիզացնում են նոր, ավելի բարձր ցուցանիշների հասնելու համար։

Ա. ԲԱԼԱՋՅԱՆ

(Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի ագիտկոլեկտիվի ղեկավար)

# ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ ՄԱՍՍԱՆԵՐԻՆ

*Աշխատանքի ընդմիջման ժամին, երկնասլաց բարդիների ստվերում հավաքվել էին Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի կոլտնտեսության դաշտավարական բրիգադի կոլտնտեսականները։*

*Նրանց կրկին այցի էր եկել կոլտնտեսության լավագույն ագիտատորներից մեկը՝ Ա. Ալեքսանյանը։ Նրա զրույցը այս անգամ նվիրված էր Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ռ. Մանուկյանի ղեկավարած բրիգադի աշխատանքի փորձի մասսայականացմանը։*

*Կոլտնտեսականները լարված ուշադրությամբ լսում էին ագիտատորին, որը պարզ ու մատչելի հաղորդում էր նրանց իրենց ընկերների հաջողությունների մասին, ցույց էր տալիս այդ հաջողություններին հասնելու «գաղտնիքը»։*

*Երբ ագիտատորն ավարտեց իր զրույցը, խոսել սկսեց բրիգադիր Մ. Պետրոսյանը։*

*— Իսկ մենք այդպես չենք աշխատում. մեր*



*բրիգադը ամոթալի կերպով ետ է մնում։ Մեր խնդիրն է սովորել հարևաններից, ընդօրինակել նրանց դրական փորձը։*

*Կոլտնտեսականները խնդրեցին ագիտատորից ավելի հաճախ լինել իրենց մոտ, ավելի մանրամասնորեն պատմել առաջավորների փորձի մասին։*

*— Մենք կարճ ժամանակամիջոցում վերջ կդնենք մեր ետ մնալուն,— այս էր բրիգադի բոլոր անդամների միահամուռ ցանկությունը։*

*Մ. Պետրոսյանի ղեկավարած բրիգադի կոլտնտեսականները կատարեցին իրենց խոստումը, նրանք առաջավորների շարքն անցան։*

*Սակայն ագիտատոր Ա. Ալեքսանյանի գործունեությունը չի կարելի անթերի համարել։ Նա կրքոտ ու համոզիչ պատմելով իրենց կոլտնտեսության առաջավոր մարդկանց լավ աշխատանքի մասին՝ հաճախ դրանով էլ բավարարվում է։ Մինչդեռ ագիտատորի պարտքն է՝ խոսել ոչ միայն մի կոլտնտեսությունում եղած աշխատանքային փորձի մասին, այլ դուրս գալ այդ կոլտնտեսության շրջանակներից, տեսնել ավելի հեռուները, տեղյակ լինել շրջանում, օկրուգում, ռես-*

պուբլիկայում, ամբողջ Միության մեջ կատարվող աշխատանքային իրագործություններին։

Իսկ այդպես կարելի է վարվել միայն այն դեպքում, եթե ագիտատորը սիստեմատիկաբար և ուշադիր հետևի մեր մամուլին։

Բոլշևիկյան մամուլը ամեն օր հարուստ նյութ է տալիս ագիտացիայի համար։ Թերթերի էջերում բազմաթիվ հոդվածներ, թղթակցություններ են տպագրվում մեր գործարաններում ու դաշտերում աշխատող բանվորների և կոլտնտեսականների աշխատանքային սխրագործությունների մասին։

Կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրերի իրականացման համար մղվող պայքարը ամեն օր, ամեն ժամ նոր հերոսներ է ծնում։ Այդ հերոսների աշխատանքային գործունեությանը պետք է ծանոթանան միլիոնները, որպեսզի է՛լ ավելի հզոր ու բազմամարդ դառնա մեր ստախանովականների բանակը։

Առաջավորների փորձի տարածման ու արմատավորման կարևորագույն միջոցներից մեկը ագիտացիան է։

Իր պարտականությունները լավ կատարող ագիտատորը մեծ օգուտ կարող է բերել գոր-



ծին։ Սակայն, որպեսզի ագիտացիան ցանկալի արդյունք ունենա, հարկավոր են մի շարք պայմաններ։ Նախ և առաջ ագիտատորը պետք է տիրապետի այն նյութին, որի մասին նա որոշել է ագիտացիա մղել։ Դժբախտաբար դեռ կան այնպիսի ագիտատորներ, որոնք նյութը գիտեն խիստ մակերեսորեն։ Եվ պատահական չէ, որ երբ ունկնդիրները հարցեր են տալիս, նրանք կամ հրաժարվում են պատասխանելուց, կամ ճիշտ պատասխաններ չեն տալիս։

Լավ ագիտատորը զրույցից առաջ անհրաժեշտ նյութեր է հավաքում, ուսումնասիրում է դրանք, մտածում է այդ նյութերը իր ունկնդիրներին մատուցելու ձևերի մասին։

Ագիտացիան կոնկրետ պետք լինի, նա պետք է սերտորեն շաղկապվի ունկնդիրների առաջ ծառացած պրակտիկ խնդիրների հետ։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը նոր վերելք են ապրում։ Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները պայքարում են երկրորդ եռամսյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Արտադրական բարձր ցուցանիշների համար ծավալվող սոցիալիստական մրցությունը նոր թափ է ստանում։

Ստախանովական բանվորները աշխատանքային արիության փայլուն օրինակներ են տալիս։

Ռեսպուբլիկայի դաշտերում սկսվել է հացահատիկի բերքահավաքը։ Առաջավոր կոմբայնավարներն արդեն հարուստ փորձ են կուտակել։ Բոլշևիկ ագիտատորի սրբազան պարտքն է՝ մեր բանվորներին ու կոլտնտեսականներին սիստեմատիկաբար պատմել արտադրության առաջավորների փորձի մասին, մասսայականացնել այդ փորձը և դրանով օժանդակել արտադրական առաջադրանքների հաջող կատարմանը։

Չափազանց լայն է սովետական մարդկանց հետաքրքրող հարցերի շրջանը։ Առաջավորների փորձը դեպի մասսաները տանելու հետ մեկտեղ, ագիտատորները պետք է աշխատավորներին տեղյակ պահեն այն ամենի հետ, ինչ տեղի է ունենում մեր մեծ Հայրենիքում և նրա սահմաններից դուրս։

Մեր երկրի աշխատավորները բերկրալի օրեր են ապրում։ Շահագործման հանձնվեց կոմունիզմի հոյակապ կառուցումներից մեկը՝ Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը։

Սովետական ժողովուրդը տոնեց իր աշխատանքային փայլուն հաղթանակներից



մեկը, որ ձեռք բերվեց բոլշևիկների պարտիայի իմաստուն ղեկավարությամբ։

Այդ ջրանցքի կառուցումը մի նոր ապացույց է այն բանի, որ սովետական մարդիկ պատերազմ չեն ուզում և զբաղվում են խաղաղ շինարարական աշխատանքով։

Կոմունիստական պարտիան, սովետական կառավարությունը, ժողովուրդների մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը անսահման հոգատարությամբ են շրջապատել մեր ժողովրդին։ Մեր կյանքը օր-օրի վրա դառնում է է՛լ ավելի լավ, է՛լ ավելի երջանիկ։

Սովետական մեծ Միության օրինակին են հետևում ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Սովետական Միությունն է ուղեղված առաջավոր մարդկության հայացքը։ մեր երկիրը իր օրինակով լուսավորում է հանուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի պայքարի ելած միլիոնների ճանապարհը։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները նոր դավեր են նյութում ազատասեր ժողովուրդների դեմ, կատաղորեն պատրաստվում են նոր պատերազմի։ Ամերիկյան օկուպանտները ոչնչացնում են Կորեայի խաղաղ բնակ-

չումյանը՝ հրի մատնելով քաղաքներն ու գյուղերը։

Սովետական երկիրը զբաղվում է կոմունիզմի կառուցմամբ։ Նա կառուցում է վիթխարի հիդրոէլեկտրակայաններ, փոխում է գետերի հունը, բերրի դաշտերի վերածում անապատները։

Մենք պատերազմ չենք ուզում, անդուլ պայքարում ենք խաղաղության ամրապնդման համար։

Սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր հաջողությունը մի նոր ավանդ է խաղաղության մեծ գործի ամրապնդման մեջ։ Աշխատանքային նորանոր հաջողությունների հասնելու, կոմունիզմի կառուցման տեմպերն արագացնելու գործում վճռական նշանակություն ունի առաջավորների փորձի մասսայականացումն ու արմատավորումը։

Բոլշևիկ ագիտատորի սրբազան պարտքն է՝ իր կրակոտ խոսքի ուժով նպաստել արտադրության առաջավորների փորձի տարածմանը և դրանով իսկ օգնել պարտիայի ու կառավարության կողմից տրվող առաջադրանքների անթերի կատարմանը, մեր Հայրենիքի հետագա հզորացմանը։



## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ ԱԿՏԻՎՈՐԵՆ ՄԱՍՆԱԿՑՈՒՄ ԵՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՅՑՈՒՄՆԵՐԻՆ

Վոլգա գետի վրա կառուցվող Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոկայանները, Գլխավոր Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքները իրենց մեծությամբ, հզորությամբ և նշանակությամբ հավասարը չունեն աշխարհում։

Ստալինյան դարաշրջանի այդ վիթխարի կառուցումներին մասնակցում են մեր Հայրենիքի բանվորները, կոլտնտեսականները, գիտության մարդիկ։ Մեր լայնածավալ երկրի բոլոր մասերից ամենօրյա օգնություն է կազմակերպվում կոմունիզմի մեծ կառուցումների կոլեկտիվներին։

Սովետական Հայաստանի աշխատավորները իրենց հերթին ակտիվորեն մասնակցում են կոմունիզմի մեծ կառուցումների աշխատանքներին։

Երևանի Ստալինյան, Մոլոտովյան, Կի-

րովյան, Սպանդարյանի ռայոնների, Լենինականի, Կիրովականի և մի շարք այլ քաղաքների ու շրջանների արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներ, կուլտուրական և գիտական հաստատություններ ակտիվորեն մասնակցում են կոմունիզմի մեծ կառուցումները ժամկետից շուտ ավարտելու գործին։ Երևանի արտադրական 18 ձեռնարկություններ 1951 թվականին կոմունիզմի մեծ կառուցումներին ուղարկել են ավելի քան 12 միլիոն ռուբլու բարձր որակի արտադրանք, այդ թվում՝ Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանն ուղարկել է 213 ուժային տրանսֆորմատոր, Փոքր հիդրոտուրբինների գործարանը՝ 22 կենտրոնախույս պոմպ, Կոմպրեսորների գործարանը՝ 19 օդային կոմպրեսոր և 48 պոմպ, էլեկտրամեխանիկական գործարանը՝ 32 էլեկտրագեներատոր, Ավտոդողերի գործարանը՝ 490 կոմպլեկտ ավտոդողեր, Ավտոդետալ գործարանը երկու միլիոն 450 հազար ռուբլու ավտոմասեր, Կարբիդի գործարանը՝ 224 տոննա կարբիդկալցիում, էլեկտրաարմատուրայի գործարանը՝ 4440 հատ զանազան էլեկտրաարմատուրա և այլն։ Վոլգա, Դնեպր, Ամու-Դարիա գետերի ափերին և կոմունիզմի մեծ կառու-



ցումների մյուս տեղամասերում ներկայումս մեծ հաջողությամբ գործածության մեջ են մտել Սովետական Հայաստանից ուղարկված մարմարը, կարբիդը, տուֆը, պեմզան և շինարարության համար անհրաժեշտ այլ ապրանքներ ու նյութեր։

Կոմունիզմի մեծ կառուցումների կոլեկտիվները իրենց գոհունակությունն են հայտնում Հայաստանի գործարաններում պատրաստված մեքենաների, գործիքների, ինչպես նաև ուղարկված շինարարական նյութերի բարձր որակի համար։ Շատ հաճախ կոմունիզմի մեծ կառուցումների առանձին տեղամասերի կոլեկտիվներ հեռագրերի ու նամակների միջոցով դիմում են Երևանի և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների գործարանների կոլեկտիվներին՝ խնդրելով կատարել նոր պատվերներ։ Երևանի Փոքր հիդրոտուրբինների գործարանի կոլեկտիվի հասցեով այս տարվա սկզբին Վոլգա-Դոն ջրանցքի կառուցողներից ստացված հեռագրի մեջ ասված էր, որ հիմնական օբեկտների կառուցման կայուն գրաֆիկը չխախտելու և սահմանված ժամկետին ջրանցքը գործարկման հանձնելու համար խնդրում ենք ոչ ուշ, քան մինչև հունվարի վերջը մեզ ուղարկել 5

պոմպ։ Այս լուրը կայծակի արագությամբ տարածվեց գործարանի բոլոր բրիգադնեըում և ցեխերում։ Բանվորների թռուցիկ միտինգից հետո ցեխերում, բրիգադներում սկսվեց եռուզեռը, ամենուրեք ծավալվեց սոցիալիստական գործարար մրցություն, առաջացավ աշխատանքային խանդավառության նոր վերելք, որի շնորհիվ կոլեկտիվը սահմանված ժամկետից 17 օր շուտ պատրաստեց Վոլգա-Դոն ջրանցքը կառուցողների պահանջած պոմպերը։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը 1951 թվականին կոմունիզմի մեծ կառուցումներին ուղարկել էր 213 ուժային տրանսֆորմատոր։ Գործարանն այս տարվա սկզբին նորից պատվեր ստացավ առաջին և երկրորդ եռամսյակներում ուղարկելու ևս 230 տրանսֆորմատոր։ Շուտով հեռագիր ստացվեց. «Մոնտաժն ուշանում է, խնդրում ենք օգնության կարգով արագացնեք տրանսֆորմատորների ուղարկումը մեր հասցեով»։ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարների այս հակիրճ հեռագրի բովանդակությունը ագիտատորների միջոցով իսկույն տարածվեց գործարանի ցեխերի, բրի-



գադների և մյուս աշխատամասերի կոլեկտիվներում։

Գիտակցելով գործի անչափ կարևորությունը՝ գործարանի կոլեկտիվը լարեց իր բոլոր ուժերը և հասավ փայլուն հաջողության։ Կոլեկտիվի 1952 թվականի առաջին 5 ամսում կոմունիզմի կառուցումների պատվերը կատարեց 180 տոկոսով, տալով միայն բարձր որակի արտադրանք։

1952 թ. ապրիլ ամսին Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինարարներից ստացավ մի նամակ, որով նրանք խնդրում էին ուղարկել «ՍԴ 6—60» տիպի 3 գեներատոր։ Գործարանի կոլեկտիվը, հաղթահարելով բոլոր տեսակի դժվարությունները, կարճ ժամկետում յուրացրեց նոր տեսակի արտադրանքի թողարկումը և Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինարարների պատվերը կատարեց 5 օրում։

Արդյունաբերության և տրանսպորտի աշխատողների հետ միասին կոմունիզմի մեծ կառուցումներին ակտիվորեն են մասնակցում նաև ռեսպուբլիկայի գիտության, գրականության և կուլտուրայի աշխատողները։

Հայաստանի Գիտությունների ակադեմիայի Հիդրոէներգետիկ և Շինանյութերի ու կառուցվածքների ինստիտուտների աշխատողները խոշոր աշխատանք են կատարել կոմունիզմի մեծ կառուցումների տեխնիկական մի շարք պրոբլեմներ լուծելու ուղղությամբ։

Հիդրոէներգետիկ ինստիտուտի կոլեկտիվը, ակադեմիկոս ընկ. Ի. Եղիազարյանի գլխավորությամբ, Երևանում կառուցել է Կույբիշևի հիդրոկայանի մոդելը։ Կոլեկտիվը ժամկետից շուտ և բարձր որակով ավարտել է ջրային հոսանքների ռեժիմների ուսումնասիրությունը, որը բարձր գնահատական է ստացել Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոհանգույցները նախագծողների և կառուցողների կողմից։

Շինանյութերի և կառուցվածքների ինստիտուտի կոլեկտիվը, պրոֆեսոր-դոկտոր ընկ. Ս. Նազարովի գլխավորությամբ, հետազոտում է կոմունիզմի մեծ կառուցումների տեղամասերում օգտագործվող բնական քարերի մեխանիկական մշակման և այլ տեխնիկական պրոցեսներ, որոնք հնարավորություն են տալիս ճիշտ կերպով լուծելու



մի շարք շինարարական կարևորագույն հարցեր։

Վերջերս Ստալինգրադի հիդրոհանգույցի շինարարության վայրը մեկնեց Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Երկրաբանական ինստիտուտի և Շինանյութերի ու կառուցվածքների ինստիտուտի միացյալ արշավախումբը։

Երկրաբանական-հանքաբանական գիտությունների թեկնածու Գ. Բաղդասարյանի գլխավորած այդ արշավախմբի ջոկատները ստորին և միջին Վոլգայի շրջաններում կատարելու են «Ստալինգրադհիդրոստրոյի» համար անհրաժեշտ շինանյութերի հանքավայրի հայտնաբերման և ուսումնասիրման աշխատանքները, որը բացառիկ կարևոր նշանակություն ունի։

Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարների հերոսական աշխատանքը և ջրանցքի կառուցման ավարտումը մեծ խանդավառություն է առաջացրել ռեսպուբլիկայի աշխատավորների մեջ, որոնք իրենց ամենօրյա լարված աշխատանքով շարունակում են օգնություն ցույց տալ կոմունիզմի մեծ կառուցումներին։

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՆԱՎՈՐ ԽՈՍՔԻ ՄԱՍԻՆ

«Ագիտացիոն աշխատանքի մեջ,— գրել է Մ. Ի. Կալինինը,— ամենադժվարը ինչպես հարկն է խոսել սովորելն է։ Առաջին հայացքից թվում է, թե ի՞նչ կա որ, մարդը հո երկու տարեկան հասակից սկսում է խոսել։ Իրականում դա մեծ ու դժվարին գործ է։ Իսկ ո՞րն է դժվարությունը։

Ագիտատորը պետք է իր միտքը հաղորդի ցայտուն կերպով, որպեսզի այն տպավորություն գործի և հենց այնպիսի տպավորություն, որպիսին ուզում է ագիտատորը։ Միևնույն ժամանակ Դուք պետք է հակիրճ շարադրեք միտքը, որովհետև քիչ ժամանակ ունեք։ Միտքը պարզ պետք է լինի ունկնդիրների համար և հասկանալի նրանցից յուրաքանչյուրին։ Այդ բոլորը շատ դժվար է։

Լեզուն պետք է սովորել... Ագիտատորի համար լեզուն ամեն ինչ է»։

Ագիտացիոն աշխատանքում լեզվի դժվարությունները հաղթահարելու համար ագի-



տատորն ամենից առաջ պետք է լավ ուսումնասիրի պարապմունքի նախընտրած թեման, քանի որ ինչպես ընդունված է ասել «լավ խոսել կարելի է խոսողին լավ ծանոթ բաների մասին»։ Ունկնդիրների առջև հաջող ելույթ ունենալու առաջին և հիմնական նախապայմանը նյութի բազմակողմանի մշակումն է։ Այդ նշանակում է, որ ագիտատորը պետք է ընթերցի նյութին վերաբերվող գրականությունը, մամուլում լույս տեսած հոդվածները, պարզի իր համար անհասկանալի հարցերը, դասակարգի նյութերը, այն հիմնական մտքերը, որ նա հաղորդելու է ունկնդիրներին։ Առանց նյութի լավ մշակման՝ հնարավոր չէ մտածել գրագետ, գեղեցիկ, համոզեցուցիչ ելույթի մասին։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Յակովլևի հետ ունեցած զրույցում ընկեր Ստալինը ասել է. «Եթե մարդը չի կարող գրագետ կերպով, ճիշտ շարադրել իր մտքերը, կնշանակի նա նույնպես անսիստեմ, քաոսային կերպով էլ մտածում է»։

Այսպիսով, նախընտրած թեմայի լավ մշակումը ագիտատորին հնարավորություն կտա նախօրոք իմանալու թե ի՞նչ պետք է ասի նա, ինչի՞ մասին պետք է խոսի։ Բայց դա ագիտացիոն աշխատանքում բոլորը չէ,

ագիտատորը նախօրոք պետք է նախապատրաստվի և գիտենա, թե իր մշակածը, գիտեցածը ինչպե՞ս պետք է ասի։

Հրապարակային խոսքի խոշորագույն վարպետների աշխատանքի ուսումնասիրությունը ցույց է տվել, որ հրապարակային ելույթի նախապատրաստության պրոցեսը բաժանվում է երկու մասի՝ 1) աշխատանք խոսքի բովանդակության վրա (նյութի ընտրություն, մշակում, մտքերի դասակարգում) և 2) աշխատանք խոսքի ձևի վրա (ելույթի տեքստի կազմում, բանավոր ձևակերպումների գրանցում, խոսքի, առանձին արտահայտությունների հաջորդական պլանավորում և այլն)։

Ելույթի նախապատրաստվելով՝ ագիտատորը ամենից առաջ պետք է հաշվի առնի իր ունկնդիրների կազմը։ Չկա և չի կարող լինել մեկընդմիշտ նախապատրաստված հրապարակային ճառ կամ ելույթ, որը պիտանի լինի ունկնդիրների ամեն տեսակ կազմի համար։ Ագիտատորի խոսքը կարող է մատչելի, գրավիչ լինել ունկնդիրների համար, եթե նա ելույթի նախապատրաստվելիս հաշվի է առել ունկնդիրների կազմը։ «...Պետք է սովորել մասսաներին մոտենալ առանձին



համբերությամբ ու զգուշությամբ,— ասել է Վ. Ի. Լենինը,— որպեսզի կարողանալ ըմբռնել այդ մասսայի յուրաքանչյուր խավի, պրոֆեսիայի և այլն, հոգեբանության առանձնահատկությունները»։

Ագիտատորի բանավոր խոսքի հաջողությունը շատ բանով կախված է նրա ունեցած փորձից, ընդունակությունից։ Բայց այդ առավելությունները չեն ազատում նրան ելույթի ձևի վրա կրկին ու կրկին աշխատելուց։ Ելույթի մանրամասն մշակած պլանը անհրաժեշտ է յուրաքանչյուր ագիտատորի, նամանավանդ սկսնակ ագիտատորի համար։ Պլանը ագիտատորին դարձնում է կարգապահ, ապահովագրում է խոսողին զանազան անակնկալություններից, ապահովում ելույթի տրամաբանական հաջորդականությունը, մտքի զարգացումը։ Պլանը իր ճշգրիտ ու հակիրճ ձևակերպումներով օգնում է ագիտատորին հարստացնելու, հղկելու իր լեզուն, մտքերն արտահայտելու հակիրճ, հըստակ, ճիշտ։

Խորհուրդ է տրվում գրել ընդարձակ կոնսպեկտներ և եթե հնարավոր է գրի առնել ելույթի ընդհանուր շարադրանքը։ Ելույթի տեքստի այս ձևի նախապատրաստությունը կհարստացնի ագիտատորի բառապաշարը,

կուժեղացնի նրա խոսքի գեղարվեստական, արտահայտչական կողմը։

Զափազանց օգտակար է նախապատրաստվող ելույթի տեքստը բարձրաձայն արտասանելու սովորությունը։ Ն. Կ. Կրուպսկայան պատմում է, որ Վ. Ի. Լենինը ճառի տեքստը պատրաստելիս արտասանում էր ֆրազները և դրանք հետո միայն, երբ լսողությունն ընդունում էր, գրանցում էր թղթի վրա։

Բանավոր խոսքի նախապատրաստման համար պահանջվող պլանը, թեզիսը կամ թեմայի լրիվ շարադրանքը չեն պարտադրում ագիտատորին ունկնդիրների առջև կարդալու իր մշակածը, գրածը։ Ընդհակառակը, ունկնդիրների վրա լավ ազդեցություն է թողնում իրենց ներկայությամբ հորինված կենդանի խոսքը։ Երկար ժամանակ տիրապետող այն կարծիքը, թե «գրված ճառը ավելի լավ է, քան միայն մտածվածը», սովետական մարդկանց քաղաքական, կուլտուրական հսկայական աճի պայմաններում տեղիք է տվել «գրիչը ձեռքին» ելույթի պատրաստվելու և «առանց տետրակի» ելույթ ունենալու համոզմանը։ Այդ սովորությունը հնարավորություն կտա ագիտատորին, ելույթի ժամանակ ազատորեն տեքստը



ստեղծելու։ Բանավոր խոսքի շարադրման նման մեթոդը հարկ եղած դեպքում թույլ կտա խոսողին հանպատրաստից, առանց վարանման ու շփոթմունքի պատասխանելու հարցերին, քննադատական դիտողություններ անել ունկնդիրների ելույթի մասին և այլն։

Հրապարակային ելույթի ձևի ընդհանուր կառուցվածքի վրա աշխատելուց հետո ագիտատորը պետք է առանձին աշխատանքով նախապատրաստի ելույթի սկիզբը, մտածի թե ինչից պետք է սկսի իր խոսքը։

Փորձված հռետորների վկայությամբ, ներածությունը բանավոր խոսքի մեջ ամենապատասխանատու մասն է։ Ելույթի սկզբում կենդանի հետաքրքրություն ներշնչել ունկընդիրներին «նվաճել լսարանի ուշադրությունը, դա մի խնդիր է,—ասել է Մ. Ի. Կալինինը, —որը նույնիսկ փորձված ագիտատորից մեծ հմտություն է պահանջում, խոսքն սկսել հեշտ չէ նույնիսկ փորձված ագիտատորի համար, հաճախ խանգարում են ներվայնությունը, շփոթությունը։ Մինչդեռ ունկնդիրներն առանձնապես ակտիվ են խոսքի սկզբում և խոսողի ամենափոքր դժվարության դեպքում հակված են նախապես դատապարտելու նրան, թյուր կարծիք կազմելու

նրա մասին։ Ուստի ագիտատորի համար շատ կարևոր է իր տրամադրության տակ ունենալ նախօրոք նախապատրաստված և լավ կառուցված ներածություն»։ Ներածությունը տարբեր ձևով կարելի է կառուցել ու արտասանել։ Հաճախ ագիտատորները պարապմունքը սկսում են ունկնդիրներին ուղղված հարցով, սկզբից լարելով ու կենտրոնացնելով ունկնդիրների ուշադրությունը, պարապմունքի թեման ակտիվ քննարկման միջոցով պարզաբանելու համար։ Ոմանք պարապմունքը սկսում են ղեկավար ընկերների ելույթներից վերցրած ցիտատներով, շատերը՝ օրվա թեմայի բովանդակության մասին հակիրճ խոսքերով և այլն։ Ինչ կերպ էլ որ սկսվի խոսքը, ագիտատորը պետք է հետապնդի միայն մեկ նպատակ՝ պարապմունքի սկզբից բորբոքել ունկնդիրների հետաքրքրությունը, կենտրոնացնել նրանց ուշադրությունը, ճիշտ ուղղություն տալ նրանց թեմայի բուն շարադրանքի մասին դատելիս։ Ներածական մասից հետո ագիտատորը անցնում է իր հրապարակային խոսքի կենտրոնական և հիմնական մասին, որը հաճախ անվանվում է պարապմունքի թեմայի շարադրանք։ Ելույթի այս մասում իրոք շարադրվում է բուն նյութը, թվարկվում են ան-



հրաժեշտ տեղեկություններ, բացահայտելով թեմայի մեջ ընդգրկվող խնդիրների բովանդակությունը։

Հրապարակային խոսքի ամենապատասխանատու մասերից մեկն է վերջին, եզրափակիչ բաժինը։ Եզրափակիչ խոսքը պետք է լինի կարճ ու բովանդակալից, արտահայտիչ ու ցայտուն։ Այս հանգամանքը պահանջում է ագիտատորից իր խոսքի նախապատրաստման ժամանակ հատկապես աշխատել իր ելույթի վերջին մասի վրա։ Ագիտատորը քաջ պետք է գիտենա, որ ելույթի անհաջող եզրափակումը կվերացնի նույնիսկ հաջող ներածությունից ու համոզեցուցիչ շարադրանքից ստացված լավ տպավորությունը։

Այսպիսով, հրապարակային խոսքի հաջողությունը ապահովելու համար, ագիտատորը պետք է համառորեն աշխատի իր վրա, ընդլայնի իր գաղափարական մտահորիզոնը, բարձրացնի իր կրթական-կուլտուրական մակարդակը, անդադրում աշխատի ճիշտ, սահուն ու արտահայտիչ կերպով խոսելու համար։

Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

Պտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

